սպաննել Ցէնա պէյի եղբօր՝ հարիւրապետ կանի պէյի ծառան: Դատարանի դուռները անմիջապէս փակուեցան եւ բոլոր ներկաները խուզարկուեցան:

կանի պէյ քանի մը օր առաջ Փրակա հասած էր, իբրեւ դատախազ եւ ուշադրութեամբ կը հետեւէր դատավարութեան, փաստաբանի մը եւ իր ծառային քով նստած:

Զիա Վուչիթէրնա ձերբակալուեցաւ: կանի պէյ եւս ոստիկանական տեսչութիւն տարուեցաւ՝ հարցաքննուելու համար:

⁂ Ցէնա պէյի ուրիշ մէկ եղբայրը՝ երեսփոխան Հասան պէյ Քրիզիու, որ ատենէ մը ի վեր Պելկրատ կը բնակի, յայտարարեց թէ խստիւ կը դատապարտէ այս սպանութիւնը, եւ աւելցուց.

— Ալպանացիներուս մօտ վրիժառութիւնը տակաւին օրէնք է: կը ցաւիմ սակայն, որովհետեւ Պէյին պարզ գործիք մըն էր եղբայրս սպաննել տուող իրական ոճրագործներուն ձեռքը: Վուչիթէրնայի գնդակները վերջ տուին դատավարութեան, սակայն եղբօրս սպանութեան գաղտնիքը չպարզուեցաւ:

## Ֆրանսական նաւատորմը

Երեսփոխանական[■] ժողովի արտաքին յանձնաժողովը լսեց ծովային Նախարար Ժորժ Լէյկը, որ զեկոյց տուաւ ֆրանսական Նաւատորմին մասին: Յիշեց թէ պատերազմէն վերջ՝ ֆրանս. Նաւատորմը ծիւրած էր: Ընկղմած եւ մաշած Նաւերու պատճառով, ամբողջ տարողութիւնը 850,000էն 400,000 թոնոյի իջած էր:

Մեծ պատերազմին Անգլիա կորսնցուց 570,000 թոնօ, Ֆրանսա՝ 113,000, Իտալիա՝ 40,000, Մ. Նահանգներ՝ 19,000, Ճափոն՝ 3,700: Ուրեմն Ֆրանսա կորսնցուց Իտալիայէն երեք անգամ, Մ. Նահանգներէն վեց անգամ, Ճափոնէն 36 անգամ աւելի, իսկ Անգլիայէն հինգ անգամ պակաս: կորուստի կողմէ Ֆրանսա երկրորդ տեղը կը գրաւէ:

Գալով Նոր մարտանաւերու շինութեան, 1914-1922 Ֆրանսա ամենավերջինն է, քանի որ շինած է միայն 28,000 թոնօ, մինչ Իտալիա շինեց 69,000, Ճափոն՝ 465,000, Ամերիկա՝ 870,000 եւ Անգլիա՝ 1,170,000 թոնօ. այսինքն Ֆրանսա շինած է Իտալիայէն 2 ու կէս, Ճափոնէն 18, Մ. Նահանգներէն 33 անգամ պակաս: Միայն Ֆրանսայի Նաւային վարկերն է որ պատերազմէ առաջուանէն պակաս են: 1914ին՝ այսօրուան ֆրանքով՝ 3,205 միլիոն ֆրանք էր, իսկ 1929ի ելմտացոյցին մէջ յատկացուած է 2,524 միլիոն, այսինքն 1914ի հետ բաղդատելով 100ին 26 պակաս: Մինչ Ամերիկայի Նաւային պիւտճէն 1914ի հետ համեմատելով 100ին 165, Ճափոնինը 100ին 120, Իտալիայինը 100ին 15 աւելցած են: 1914ին Ֆրանսա ունէր 1860 ծովային սպայ եւ 66,566 Նաւազ, այսօր ունի 1798 սպայ և 53,000 Նաւազ:

Ֆրանսա պատրաստ ունի ներկայիս 488,000 թոնօ տարողութեամբ Նաւատորմ. իսկ շինուելու վրայ են 90,000 թոնօ տարողութեամբ Նոր մարտանաւեր: 1927ին եւ 1928ին 550,000 քիլոմեդր ճամբայ կտրեցին, այսինքն աշխարհի շրջանէն 14 անգամ աւելի:

## Հակաֆրանսական ցոյցեր Իտալիոյ մէջ

Այս շաբթու Սէնի Ոճրադատ Ատեանին առջեւ տեղի ունեցաւ դատավարութիւնը իտալացի համայնավար տի Մօտունեօի, որ անցած տարի սպաննած էր Փարիզի իտալական ընդհ. հիւպատոս կոմս տի Նարտինին: Դատարանը միայն երկու տարի բանտարկութեան դատապարտեց անհաբեկիչ Մօտունեօն:

Այս թեթեւ պատիժը ընդհանուր զայրոյթ առաջ բերած է ֆաշիստ Իտալիոյ մէջ եւ բոլոր թերթերը խիստ լեզուով կ'արտայայտուին Ֆրանսայի դէմ, մէջտեղ դնելով ֆրանքօ-իտալական յարաբերութեանց խնդիրը:

Թերթ մը կը հարցնէ թէ՝ ի՞նչ պիտի ըսէին Ֆրանսայի մէջ, եթէ Իտալիոյ մէջ սպաննուէր ֆրանսացի պաշտօնեայ մը:

Ուրբաթ օր, ուսանողական թափօրներ շրջեցան Հռոմի փողոցներուն մէջ եւ ուղղուեցան դէպի Քիճիի պալատը՝ ուր խանդավառ ցոյցեր ըրին Մուսոլինիի հասցէին: Յետոյ գացին Վէնէցիա հրապարակը՝ Անծանօթ Զինուորի գերեզմանը: Ցուցարարները անկէ անցան ֆաշիստ կուսակցութեան կեդրոնատեղին, ուր ծափահարեցին ընդհ. քարտուղար Թուրաթթին, որ պատշգամին վրայ երեւցաւ եւ հռոմէական ողջոյնով մը շնորհակալութիւն յայտնեց:

Ուսանողական Նման ցոյցեր տեղի ունեցան Նաեւ Նափոլիի մէջ, ուր Ֆրանսայի հասցէին թշնամական բացագանչութիւններ տեղի ունեցան եւ փորձ եղաւ յարձակելու ֆրանսական հիւպատոսարանին վրայ, սակայն ոստիկանութիւնը հեռացուց ցուցարարները:

Հռոմի մէջ Ֆարնէզի պալատը (ֆրանսական դեսպանատունը) պահպանուած է ոստիկաններէ, ֆաշիստ քաղաքապահներէ եւ հետեւակազօրքերէ բաղկացած կարեւոր ուժերով:

Իտալացի գնդապետ Ռասփոնի ետ ղրկած է իր ֆրանսական պատուանշանները:

«Իմփէրօ կը հրաւիրէ Նախկին զինուորներն ու առհասարակ բոլոր իտալական քաղաքացիները հետեւիլ գնդապետ Ռասփոնիի օրինակին, Ֆրանսայի Հանրապետութեան Նախագահին ղրկելով իրենց ֆրանսական շքանշանները: Նոյն թերթը կ'ըսէ թէ տի Մօտունեօի դէմ փոխ վրէժի պիտի դիմուի:

Ֆրանսայի բարեկամ երկիրներու դեսպանատունները եւս հսկողութեան տակ առնուեցան, մասնաւորապէս Եուկոսլաւիոյ դեսպանատունը:

«Պրիլլանթէ» յիշելէ յետոյ բազմաթիւ պարագաներ, ուր Ֆրանսայի քաղաքականութիւնը հակառակած է իտալականին, կ'ըսէ.

— Ֆրանսա կ'ատէ Իտալիան, որովհետեւ այս վերջինը համաշխարհային քաղաքականութեան մէջ իր տեղը գրաւելու վրայ է:

## Համայնավարներու պառակտումը

Մոսկուայէն կը հեռագրեն թէ համայնավար կուսակցութեան գործադիր կոմիտէն որոշած է իրենց պաշտօններէն դադրեցնել Մոսկուայի Արհեստակցական Միութեանց Նախագահ Միխայլոֆը եւ աւելի քան 5000 պաշտօնեաներ, որոնք ընդդիմադիր աջ թեւին կը պատկանին:

Պաշտօնանկ եղաւ «Պրաւդա»յի խմբագրապետ Կոստրոֆ, որ կասկածելի տարրերու մասին համակրանքով արտայայտուած էր: Աշխատանքի գործավար Նշանակուեցաւ Ուգլանոֆ, Շմիտի տեղ՝ որ գործադիր կոմիտէի Նախագահ անուանուեցաւ:

Թուրք կառավարութիւնը սկսած էր զէնք հաւաքել Ներքին գաւառներու Քիւրտերէն։ Ասոր վրայ շրջակայքի աշիրաթապետը Սատօ Քասօ՝ Մազի լեռը քաշուելով ձիաւոր ժանտարմաներու հետ կռուի բռնուեցաւ և անոնցմէ 8 հոգի սպաննեց ու 20 հոգի ալ վիրաւորեց։

## ՀԱՆԴԱՐՏՈՒԹԻՒՆ ՊՈՒԼԿԱՐԻՈՅ ՄԷՋ

Սօֆիայի մեր Թղթակիցը կը գրէ.—

«Տէյլի Էքսփրէս»ի Վիեննայի Թղթակցին հեռագիրը թէ Սօֆիայի մէջ ծանր կացութիւն կը տիրէ՝ բացարձակ մտացածին է. ո՛չ խուճապ կայ Սօֆիայի մէջ եւ ո՛չ ալ հանրային շէնքերը բռնուած են զինուորներու կողմէ, ամէն մարդ գիշերը մինչեւ ուշ ատեն կը զբօսնու։

Սերպ սպային ալ տեսած կախաղանները երեւի ելեկտրական Թելերու ձողերն են, որոնք միշուշին մէջ կախաղաններու տպաւորութիւն ձգած են հակապուլկար աչքերու վրայ։

## Կտրօններու խնդիրը կարգադրուած

Օսմանեան Հանրային Պարտքին կտրօններու խնդիրը, որոնք տարիներէ ի վեր առկախ կը մնային, վերջապէս կարգադրուեցան, կարգ մը վերապահումներով։

Էնկիւրիի Ազգ. Մեծ ժողովը շաբաթ օր զբաղեցաւ այդ հարցերով։ Նախ վիճաբանութիւններ կատարուեցան ելմտացոյցի յանձնաժողովին տեղեկագրին վրայ, որ ընդունուած էր 4ի դէմ 14 ձայնով։ Այս տեղեկագիրը կը վերլուծէր Փարիզի մէջ Թուրք պատուիրակներուն եւ օտար պարտատէրերուն միջեւ կնքուած պայմանագրութիւնը եւ կ՚եզրակացնէր թէ պայմանները առաւելագոյն զոհողութիւնն են Թուրքիոյ համար։ Կ՚ըսէր թէ ժողովուրդը առանց ցնցումի չի կրնար տանիլ այս ծանր բեռը, որուն պատասխանատու չէ Հանրապետութիւնը։ Տեղեկագիրը ի վերջոյ կը յանձնարարէր ընդունիլզայն ամբողջութեամբ՝ հանրապետական կառավարութեան գերիշխանութեան եւ հմայքին համար։

Ելմտական Նախարարը ընդունելով հանդերձ որ պայմանները ծանր են, պահանջեց վաւերացնել համաձայնագիրը։

Կտրօններու խնդրին շուրջ բուռն վիճաբանութիւններ կատարուեցան։ Երկու երեսփոխաններ ներկայացուցին երկու բանաձեւեր, հետեւեալ իմաստով. «Քանի որ պարտատէրերու մեծ մասը Ֆրանսացիներ են, համաձայնագրի վիճաբանութիւնը յետաձգել՝ մինչեւ որ կարգադրուի սուրիական սահմանագլուխի խնդիրը»։

Արտաքին գործավար Թէվֆիք Րիւշտի պէյ հաստատելով հանդերձ որ Թուրքիոյ համար կարեւոր է սուրիական սահմանագլուխի հարցը, Խորհրդարանէն խնդրեց որ պարտատէրերուն հետ ուղղակի բանակցութեամբ կնքուած համաձայնագիրը քննէ՝ բոլորովին անջատ ուրիշ խնդիրներէ։ Զանազան երեսփոխաններու յիշած «յաղթական եւ յաղթուած» բացատրութեան ակնարկելով, ըսաւ թէ Թուրքիա իր դաշնագիրները կնքած է հաւասարութեան հիման վրայ։ Աւելցուց թէ կառավարութիւնը մեծ ուշադրութեամբ կը հետապնդէ երեսփոխաններու ակնարկած կենսական խնդիրները։

Երկար վիճաբանութիւններէ յետոյ, Ազգային Մեծ ժողովը 31ի դէմ 204 ձայնով եւ կարգ մը վերապահումներով ընդունեց Օսմ. Հանրային Պարտքի եւ կտրօններու համաձայնագիրը։

## Իտալիա եւ Սուրիոյ հոգատարութիւնը

Իտալիոյ մէջ հակաֆրանսական ցոյցերը կը շարունակուին, ծանօթ դատավճիռին հետեւանքով։ Ասկէ զատ թերթերը կ՚արտատպեն Փուանքարէի յայտարարութիւնները Սուրիոյ մասին եւ կը յարձակին անոր վրայ՝ Իտալիոյ մասին բրած ակնարկութեան համար։

«Թրիպունա» երկար յօդուած մը հրատարակելով, կը գրէ,

«Փուանքարէ՝ առանց ո եւ է պատճառի ակնարկութիւն մը ըրաւ Իտալիոյ՝ որպէսզի ընկերվարականները նուազ թշնամական դիրք բռնեն կառավարութեան դէմ, վաւերացնեն զինուորական վարկերը եւ իր կայսերական քաղաքականութիւնը։ Իտալիա ո՛չ մէկ միջազգային ձեռնարկ կատարած է Սուրիոյ հոգատարութիւնը առնելու համար Ֆրանսայի ձեռքէն»։

«Ճոռնալէ տ՚Իտալիա» գրելէ յետոյ, թէ Իտալիա չի կրնար հանդուրժել որ օտար կառավարութիւն մը զէնքը խնդրոյ առարկայ դարձնէ իր դատը պաշտպանելու համար, կ՚ըսէ.

— Իտալիա տակաւին Ֆրանսայէն կը սպասէ հատուցումը իր գաղթային պարտքին՝ Նախատեսուած դաշնագիրներով։ Իտալիա երբեք չէ բաղձացած հոգատարութիւն մը՝ Սուրիոյ վրայ։

Ֆրանսայի դէմ հակառակութիւնը գրգռելու համար թերթերը կը քննադատեն նաեւ Ֆրանսայի ծովային նախարարին ըրած յայտարարութիւնները Իտալիոյ Նաւատորմին մասին։»

«Թրիպունա» կ՚ըսէ թէ Իտալիոյ Նաւային ելմտացոյցը 1,150 միլիոն լիրէթ է, մինչ Ֆրանսայինը՝ 2,960 միլիոն։ Մինչ Ֆրանսա իր Նաւային շինութեանց համար յատկացուցած է 6,298 միլիոն ֆրանք, Իտալիա 2,700,000 լիրէթ միայն պիտի ծախսէ։ 1931ին, իր ծրագրին համաձայն, Ֆրանսա պիտի ունենայ 59 թեթեւ մարտանաւեր՝ 186,300 թոնօ տարողութեամբ, 68 սուզանաւեր՝ 73,150 թոնօ տարողութեամբ եւ 11 մասնաւոր մարտանաւեր՝ 76,000 թոնօ տարողութեամբ, մինչ Իտալիա պիտի ունենայ միայն 43 թեթեւ մարտանաւեր 118, 840 թոնօ տարողութեամբ, 27 ընդծովեայ՝ 24,950 թոնօ եւ 10 մասնաւոր մարտանաւեր՝ 32,700 թոնօ տարողութեամբ։

## Անգլիոյ թագաւորին վիճակը ծանրացած

Լոնտոնէն հասած վերջին լուրերու համաձայն, Անգլիոյ Ճորճ Ե. թագաւորին հիւանդութիւնը շատ ծանր փուլի մը մէջ մտած է։ Թագաւորը 72 ժամէ ի վեր ոեւէ սնունդ չէ առած, սիրտը տկարացած է եւ ուժերը բոլորովին կորսնցուցած։ Անհամար բազմութիւն մը խռնուած է Պըքինկէմի արքայական պալատին առջեւ՝ լուրեր առնելու համար թագաւորի վիճակին մասին։

Գահաժառանգ իշխանը, որ հարաւային Ափրիկէ կը գտնուէր, հեռագրով Անգլիա կանչուեցաւ։ Զրահաւոր մը ղրկուեցաւ Աղեքսանդրիա՝ իշխանը Լոնտոն բերելու համար։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

խանակութեան հետ, որ տեղի ունեցած է օրինական պայմաններու մէջ, եւ ամենայն կանոնաւորութեամբ:

«Ճիւմհուրիյէթ» այս առթիւ կը գրէ.— Բէժալէտաին պէյի այս յայտարարութիւններուն վրայ, քննութիւն կատարեցինք եւ տեղեկացանք որ արդարեւ երեք տարի առաջ.ալ կարգ մը գեղծումներ գործուած են: Հանրային Պարտքի Վարչութեան ճիւղի մը պետը ռուս սիրուհի մը ունի եղեր, որու եղբայրը իրբեւ տեղակալ պաշտօնի կոչեր է Հանրային Պարտքի Վարչութեան մէջ: Այս երիտասարդ Ռուսը, փոխանակութեան համար իրեն յանձնուած պատռտած եւ հնցած թղթադրամներուն մէկ մասը կրկին շրջաբերութեան հանած է: Կ'ըսուի թէ այս խնդրին մասին ժամանակին քննութիւն կատարուած է՝ առանց ո. բոշ արդիւնքի մը յանգելու:

## Կռիւ Հիճազի եւ Անդրյորդանանի միջեւ

Անդրյորդանանի հիւսիս - արեւելեան սահմանին վրայ ընդհարումներ առաջ եկած են Արաբներու եւ Նէճտի Վէհապիներուն միջեւ: Հիճազի Թագաւորը Իպնը Սուուտ հալածելով Մէքքէէն սահմանագլուխ մեկնեցաւ:

Պաղեստինի անգլիական մարզպանը հրաման տուաւ Անդրյորդանանի օդանաւային տորմիղին, որուն կեդրոնը կը գտնուի Ամման, Թռիչք մը կատարել խռովութեան ենթակայ շրջանին վերեւ:

Արաբ զինուորներ եւ զրահապատ հրասայլեր ղրկուեցան՝ սահմանագլուխը պաշտպանելու համար Վէհապիներուն դէմ:

Միւս կողմէ «Թայմզ» կը գրէ թէ վերջերս Անդրյորդանանի մէջ տեղի ունեցան առաջին ընտրութիւնները, համաձայն անգլօյորդանանեան դաշնագրին, սակայն բոյկոտի ենթարկո եցան արաբ ազգայնական տարրերուն կողմէ, որոնք հակառակ են այդ դաշնագրին: Նոյն իսկ Էմիր Ապտուլլահը իբրեւ օտարական կը նկատեն:

## Հազար Աֆղան ապստամբներ սպաննուած

Աֆղանիստանէն հասած վերջին լուրերը տակաւին ծանր ցոյց կուտան կացութիւնը: Ապստամբական շարժման սկիզբէն ի վեր աւելի քան հազար ապստամբներ սպաննուած են:

Ուղղակի Քուպայէն հասած տեղեկութիւններու համաձայն, ապստամբութիւնը գրգռողներն են կրօնական պետերը, որոնք կատաղի ընդդիմութիւն մը ցոյց կուտան Ամանուլլահ Թագաւորի բարենորոգումներուն:

Ամանուլլահ Թագաւորը նախ չուզեց ուժով զսպել ապստամբութիւնը եւ ապստամբ ցեղապետներուն մօտ ղրկեց ուրիշ կրօնական պետեր, բացատրելու համար անոնց թէ այդ բարենորոգումները հակառակ չեն իսլամական կրօնքին:

Սակայն ցեղապետները չուզեցին մտիկ ընել Թագաւորի պատգամաւորները: Այն ատեն Ամանուլլահ Թագաւորը անոնց դէմ ղրկեց երեք զօրագունդեր: Առաջին կռիւները յաղթանակներ եղան Թագաւորին համար, որու զինուորները գրաւեցին ապստամբներու երեք գլխաւոր կեդրոնները: Գործողութիւնները կը շարունակուին՝ ապստամբները ամբողջութեամբ պաշարելու համար:

## Կացութիւնը Եուկոսլաւիոյ մէջ

Պելկրատէն կը հեռագրեն 7 դեկտ. թուականով.—

Նախարարական խորհուրդը երէկ իրիկուն երկու ժամուան խորհրդակցութիւն մը ունեցաւ Զագրէպի մէջ ձեռք առնուելիք միջոցներուն մասին: Բոլոր Նախարարները հաւանութիւն յայտնեցին գնդապետ Մաքսիմովիչի Զագրէպի կուսակալ անուանումին համար:

Ժողովրդավար կուսակցութեան Նախարարներուն մէջ բուռն դժգոհութիւն մը առաջ եկած էր, սակայն վարչապետ Հ. Քորոշէցի Նախարարական խորհուրդին մէջ բրած յայտարարութիւններէն յետոյ, ժողովրդավարները փոխեցին իրենց դիրքը:

⁂ Զագրէպի նորընտիր կառավարիչ գնդապետ Մաքսիմովիչ իր պաշտօնատեղին մեկնելէ առաջ ընդունուեցաւ Ալեքսանդր Թագաւորին կողմէ: Յետոյ տեսակցեցաւ պատերազմական եւ Ներքին Նախարարներուն, ինչպէս նաեւ վարչապետին հետ, որ վերջին հրահանգները տուաւ անոր:

Այս տեսակցութիւններէն յետոյ Մաքսիմովիչ յայտարարեց լրագրողներուն.

— Ես զինուոր մըն եմ: Պարտականութիւնս է ինծի յանձնուած պաշտօնը կատարել օրինաւոր կերպով, Թագաւորի եւ հայրենիքի շահուն համար: Այս է իմ սկզբունքս:

## Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷՆ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերներն ու ընկերուհիները վաղը երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին Քաֆէ օ Ք.լէռ տը Լիւնի վերնայարկը: Օրակարգ՝ Պատգամաւորներու ընտրութիւն եւայլն:

Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

## Հ. Յ. Դ.

Պելվիլի կոմիտէի ընդհ. ժողովը՝ այս առաւօտ ժամը 10ին 131 Fbg. du Temple.

Սէն Թ'էթիէնի ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս երկուշաբթի իրիկուն ժամը 7.30էն սովորական սրահը (3 Place Peuple): Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է ներկայանալ անդամատետրով:

Լիոնի Կուկունեան խումբի ժողովը այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին նախորդ ժողովի տեղը: Խիստ կարեւոր օրակարգ: Ներկայ պիտի ըլլայ շրջ. կոմիտէի ներկայացուցիչը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:



IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

⁂ Թայմզի Պաղտատի Թղթակիցն ալ կը հեռագրէ.

Հիճազի մէջ ծագած ապստամբութիւնը ռեւէ արձագանգ չգտաւ Իրաքի սահմանագլուխին վրայ: Նախկին Թագաւոր Ալիի համաձայն, Ճիտտէի շրջանին մէջ ապստամբողները կը պատկանին Հարպ ցեղախումբին, որ բաղկացած է երկու ճիւղերէ՝ Պէնի Սալիմ և Պէնի Մասրուհ: Այս վերջինը միշտ գլխու ցաւ եղած էր Թուրքերուն: Թագաւորը կը բացատրէ թէ Հարպ ցեղախումբը տարեկան 60,000 անգլիական ոսկի կը ստանար Թուրքերէն, յետոյ ալ Հիւսէյին Թագաւորէն: Վէհապի Թագաւորը մերժած էր վճարել այդ գումարը:

Հարպի մարդիկը տարիներէ ի վեր ուխտաւոր կը փոխադրեն Ճիտտէի, Մէքքէի եւ Մէտինէի միջեւ, մինչ վերջերս Իպնը Սուուտի կարգադրութեամբ այդ փոխադրութիւնները կը կատարուին ինքնաշարժերով, որով եւ այդ պէտէվիները կը զրկուին իրենց ապրուստի թանկագին մէկ միջոցէն:

Թայիֆի մօտ վէհապի Թագաւորին դէմ ապստամբողներն են հաւանաբար Պէնի Սուֆիան, Պէնի Սաատ, Նասիրա, Ղամիտ եւ Զահրան ցեղախումբերը, որոնց ընդհանուր թիւը 30,000ը չանցնիր: Ալի Թագաւոր աւելցուց որ եթէ ապստամբները անկախութիւն չեն պահանջեր Հաշէմի՛ի գերդաստանի իշխանութեան տակ, հաւանաբար կ'ուզեն միանալ Եմէնի Զայիտի Իմամ Եահեային հետ:

⁂ Գահիրէէն ալ կը հաղորդեն թէ Հիճազի Թագաւորը Իպնը Սուուտ պատերազմ յայտարարած է Իրաքի եւ Եմէնի դէմ, վերջին օրերս Հիճազի հպատակ բազմաթիւ Արաբներ ջարդուած ըլլալով յիշեալ երկիրներուն մէջ: Եմէնի կառավարութիւնը արդէն դրօշի տակ կանչած է բազմաթիւ դասակարգեր:

## Հարաւային Ամերիկայի պատերազմը

Պոլիվիոյ եւ Փարակուէյի միջեւ անպաշտօն պատերազմը կը շարունակուի էլ Շաքօի ճակատին վրայ: Ցարդ երկուստեք սպաննուած զինուորներու եւ սպաներու թիւը 200ը կ'անցնի: 10,000 Փարակուէյցի կամաւորներ արդէն մեկնած են ճակատ: Փարակուէյցիները վերագրաւեցին երեքը այն չորս ամրոցներէն, որոնք քանի մը օր առաջ գրաւուած էին Պոլիվիացիներու կողմէ:

Եթէ պաշտօնապէս պատերազմ յայտարարուի, վախ կայ որ ուրիշ երկիրներ ալ մասնակցին: Արժանթին պիտի անցնի Պոլիվիոյ կողմը, մինչ Պրազիլիա եւ Չիլի պիտի կանգնին Փարակուէյի կողքին: Փարակուէյ աւելի փոքր է քան Պոլիվիան:

Պոլիվիոյ մայրաքաղաք Լա Փազէն կը հեռագրեն թէ՝ պոլիվիացի զինուորներուն հրաման տրուած է կասեցնել իրենց յարձակողականը փարակուէյցի զինուորներուն դէմ:

Ազգերու Դաշնակցութիւնը լրջօրէն կը զբաղի այս խնդրով, ու եթէ երկու երկիրները հաշտարար եղանակով չկարգադրեն իրենց վէճը, այն ատեն Պրիան արտակարգ նիստի պիտի հրաւիրէ Ազգերու Դաշնակցութեան Խորհուրդը Փարիզի մէջ:

## Անգլօ-ռուս առեւտուր

Անգլիոյ Երեսփոխանական ժողովի առջի օրուան նիստին մէջ աշխատաւորական երեսփոխան Փոնսոնպի հարցուց արտաքին Նախարար սըր Օսթըն Չէմպըրլէյնի թէ՝ ուշադրութիւն դարձուցա՞ծ է դեկտեմբեր 11ին Մոսկուայի մէջ Լիտվինոֆի խօսած ճառին վրայ: Այդ ճառին մէջ Լիտվինոֆ պարզելով խորհրդային կառավարութեան արտաքին քաղաքականութիւնը՝ յայտնեց թէ Ռուսիոյ եւ ուրիշ երկիրներու ներկայ առեւտրական եւ դիւանագիտական յարաբերութեանց հիմը կը կազմէ այդ երկիրներու ներքին գործերուն չխառնուելու սկզբունքը: Փոնսոնպի հարցուց նաեւ որ եթէ խորհրդային կառավարութիւնը ընդունի Անգլիոյ ներքին գործերուն չխառնուելու սկզբունքը եւ ապահովութիւն տայ այդ մասին, անգլիական կառավարութիւնը տրամադի՞ր է նկատողութեան առնել բոլշեւիկներուն հետ դիւանագիտական եւ առեւտրական յարաբերութիւններ վերահաստատելու խնդիրը:

Սըր Օսթըն իր պատասխանին մէջ Փոնսոնպիին յանձնարարեց այն ճառը, զոր Անգլիոյ վարչապետը խօսած էր նոյեմբեր 9ին եւ որուն մէջ թուած էր պայմանները, որոնց տակ կառավարութիւնը պատրաստ է յարաբերութիւններ վերահաստատել Ռուսիոյ հետ:

Չէմպըրլէյն աւելցուց թէ խորհրդային կառավարութիւնը երբեք չէ հրաժարած իր պրոպականդի քաղաքականութենէն: «Երբ դադրին այն բոլորը, որոնց մասին կը գանգատինք, այն ատեն նկատի պիտի առնենք յարաբերութեանց վերահաստատումը»:

## Գերմանեւռուս բանակցութիւնները

Մոսկուայի մէջ գերմանեւռուս բանակցութիւնները փութով առաջ կը տարուին եւ յոյս կայ որ վերջանան Ծնունդէն առաջ: Արդէն բազմաթիւ կէտերու մասին համաձայնութիւն գոյացած է եւ յանձնաժողովներուն պատօն տրուած է յօդուածներու վերջնական խմբագրութիւնը կատարել՝ փրոթոքոլի ձեւով կցելու համար զանոնք 1925ի առեւտրական դաշնագրին:

Խորհրդային կառավարութիւնը գոհացում տուած է Գերմանիոյ բոլոր պահանջներուն: Գերմանիա իր կողմէն ընդունած է կարգ մը խորհրդային պայմաններ:

## Ոսկիի գանձ մը՝ Հայու մը խանութին

Ոսկիի մեծ գանձ մը գտնուեցաւ Պոլիս Մահմուտ Փաշա, Թիթեղի եւ փամփուշտի գործարանի տէր Պ. Գրիգորի հաստատութեան մէջ: Խանութին ետեւի կողմը, պարտէզին մէջ հողը փորած ատեն, գործաւորները աման մը լեցուն ոսկի կը գտնեն եւ կ'որոշեն իրենց միջեւ բաժնել, առանց մարդու բան ըսելու:

Ոստիկանութիւնը իմանալով անմիջապէս կը գրաւէ գանձը, որ կը պարունակէր 2000է աւելի զանազան տեսակ հնչուն ոսկի:

Կ'ենթադրուի թէ դրամներուն մէկ մասը պահուած է գտնողներուն կողմէ: Ոստիկանութիւնը կը շարունակէ քննութիւնը: Գտնուած դրամներուն մէջ կան նաեւ Սուլթան Մահմուտի շրջանէն մնացած հինգ ոսկինոցներ:

⁂ Գասըմ Փաշա, Արիֆ անուն նախկին մաքսախոյսին տան մէջ խուզարկութիւն կատարելով գտնուեցան շատ մը զէնքեր, մեծ մասը անգլիական հրացան:



## Հ. Յ. Դ.

Մարսէյլի Պատ. միութեան հրապարակային դասախօսական եւ վիճաբանական ժողովը՝ վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Նիւթ՝ վիճաբանութեանց շարունակութիւն: Կը նախագահէ ընկ. Ա. Արօեան: Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները: Մուտքը ազատ է:

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

գոնսթանցա, Գործ.— 876 ֆր.:

Դիմեցէք Հայրենիքի վարչութեան:

վիլֆրանշ, Ա. Մ.— 40:
քասթամակնա, Գ.Գ.— 70:
մարսէյլ, Մ. Յ.— 35:
Տէսին, Հայր.— 35:
Լիոն, Զ. Տ.— 35:
Տէսին Մ. Դ.— 35:
մարսէյլ, Բ.Հ.Միութ.— 20:
Նիս, Պ. Ա.— 70:
կրընոպլը, Գ. Մ.— 50:
Լիոն, Գործ.— 477:
Նիս, Ա. Վ.— 70:
Մարսէյլ, Գործ.— 504.50:
Մարսէյլ, Յ. Է.— 140:
Թուլոն, Աշխ.— 100:
Պազարճըգ, Գործ.— 930 լէյ:
Մարսէյլ, Յ. Ա.— 80 ֆր.:


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

ներն ալ Փարիզ ապաստանած են, դատական ոստիկանութիւնը առջի օր ձերբակալեց երեքն ալ։

Առտուն կանուխ՝ ժամը 7ին ձերբակալուեցաւ Մաքսիմովիչ Լիտվինոֆ, 42 տարեկան, ծնած Լեհաստան, որ Վիքթորիա պողոտայի մէկ պանդոկը կը բնակէր իր բարեկամուհիին՝ Տիկ. Եւա Փրէնսքայի հետ, 27 տարեկան լեհ կին մը։ Լիտվինոֆ՝ Փրէնսքա արձանագրել տուած էր անունն ալ։ Լիտվինոֆ խիստ բողոքեց երբ դատական պաշտօնեան մանրակրկիտ խուզարկել ետք իր սենեակը, յայտնեց թէ կը ձերբակալէ զինքը։

Անկէ վերջ, դատական իշխանութեան ներկայացուցիչները Արքատ փողոցին մէջ ձերբակալեցին Մարք Եոֆֆէ անուն մէկը, 42 տարեկան, որ դրամատուն ունի Պերլինի մէջ, իսկ Գրանժ Պաթլիէռ փողոցի մէկ պանդոկին մէջ ալ ձերբակալեցին երրորդ դրամաշորթը, Վիլլի Լիպարիուս, 28 տարեկան, նախկին պանդոկատէր Պոքումի մէջ։ Լիպարիուս Փարիզ հասած էր անցեալ ամիս, Օր. Ֆրանք Հէտվինկ անուն գերման աղջկան մը հետ։

Երեք խաչագողներն ալ տարուեցան նախ դատական ոստիկանութիւն, յետոյ մարդաչափական գրասենեակը, ուր դրուեցան հարցաքննիչ դատաւոր Օտիպէրի տրամադրութեան տակ։

Փարիզի խորհրդային դեսպանատան մէջ կը յայտարարեն թէ Լիտվինոֆ իր գեղծարարութիւնները սկսած էր երբ Պերլինի առեւտրական ներկայացուցչութեան մէջ պատասխանատու պաշտօն ունէր։ Այն ատեն Մոսկուա կանչուեցաւ հաշիւ տալու եւ դատուելու համար, սակայն չգնաց, ու պաշտօնանկ հռչակուեցաւ։

## Ահռելի պայթում մը Լոնտոնի մէջ

Առջի առաւօտ Լոնտոնի Հոլպըրն թաղամասը ուժգնօրէն ցնցուեցաւ կազի ահռելի պայթումէ մը։ Մէկ քիլոմեդր երկարութեամբ ճամբայ քանդուեցաւ, 15 հոգի վիրաւորուեցան. մէկ հոգի ծանր վիճակի մէջ հիւանդանոց փոխադրուեցաւ։ Վրայէ վրայ չորս պայթումներ տեղի ունեցան. սալայատակը ճեղքուեցաւ, քարերը օդ նետուեցան՝ հասնելով մինչեւ շէնքերու վեցերորդ յարկը։ Ապակիներ ջարդուփշուր եղան։

Կազի խողովակները պայթած ըլլալով, կազը կը խուժէր օդին մէջ, անշնչելի դարձնելով զայն։ Մարդիկ կը մարէին փողոցին մէջ։ Անմիջապէս օգնութեան փութացին մեծ թիւով հրշէջներ եւ գինուորներ։ Տեղ տեղ կազը բռնկած կը բոցավառէր։

Ժամը 12.30ին նոր պայթում մը պատահեցաւ ամբողջովին քանդելով շարժանկարի մթերանոց մը։ Պայթումները շարունակուեցան ամբողջ օրը եւ գիշերը։

Կեանքը խանգարուած է ամբողջ թաղին մէջ։ Ամիսներ եւ միլիոններ պէտք պիտի ըլլան՝ վնասները դարմանելու համար։ Բազմաթիւ շէնքերու հիմերը սարսած են եւ հարկ պիտի ըլլայ փլցնել զանոնք։ Ամբողջ թաղը երկրաշարժի ենթարկուածի տպաւորութիւնն ունի։

## Վարձակալութեան նոր օրէնքը

Դատական Նախարար Լուի Պարթու պատրաստած է վարձակալութեան նոր օրէնք մը, որով կարգ մը փոփոխութիւններ կը մտցուին հին օրէնքին մէջ։

Նախարարական Խորհուրդը այսօր նոր օրէնքին վերջնական բնագիրը պիտի խմբագրէ։

## 38 արքայականներ ձերբակալուած

Արքայական կուսակցութեան պատկանող երիտասարդներ վերջին օրերս զանազան ցոյցեր կատարեցին։ Մասնաւորապէս ուշագրաւ էր իրենց ցոյցը երկրագործական Նախարար Հէնըսիի դէմ։

«Աքսիոն Ֆրանսէզ» թերթի կոչին վրայ, առջի օր բազմաթիւ արքայական ուսանողներ ներկայացան Աքսիոն Ֆրանսէզի Ուսանողական Տունը՝ նոր ցոյցերու մասին հրահանգ ստանալու համար։

Ներքին Նախարարը հրահանգած ըլլալով խիստ միջոցներ ձեռք առնել ցուցարարներուն դէմ, 38 արքայականներ ձերբակալուելով ոստիկանատուն տարուեցան։ Մէկուն վրայէն ատրճանակ մը գտնուելով բանտարկուեցաւ։

## Երեսփոխաններու թոշակը

Ծերակոյտը մերժեց քուէարկել 1929ի ելմտացոյցին այն յօդուածը, որով երեսփոխաններու տարեթոշակը 45,000էն կը բարձրացուի 60,000ի։ Նախարարական խորհուրդը որոշեց պահել 45,000 ֆրանք տարեթոշակը եւ 15,000 ֆրանք աւելցնել այս գումարին վրայ՝ իբրեւ բնակարանի վարձք եւայլն։

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

**Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷՆ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ**
կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի ընկերները վաղը, կիրակի առաւօտ ժամը 10.30ին, Rue Fbg. St. Martin թիւ 225 Aux deux Stations սրճարանի վերնայարկը, «ՅԱՌԱՋ»ի ԽՄԲԱԳՐԱՏԱՆ ԴԻՄԱՑԻ ԿԱՐԳԸ։ ընտրութիւն պատգամաւորներու եւ խիստ կարեւոր օրակարգ։



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Հայ Թեքնիքական միութեան ընդհ. ժողովը՝ այս Դշ. ժամը 8.30ին Ֆլորիա ճաշարանը։ Օրակարգ՝ Հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E· SOUVIGNY








երկու օր առաջ փոխադրուած է կեդրոնական Աֆղանիստանի Քանտահար քաղաքը, ուր Ամանուլլահ Թագաւորը կ՚աշխատի աւելցնել թիւը իր կուսակիցներուն։

Քապուլի մէջ հանդարտութիւն կը տիրէ։ Կը կարծուի թէ օտար դիւանագիտական մարմինները աջակցութիւն խնդրած են անգլիական դեսպանէն։

Աֆղան կառավարութեան հաւանութեամբ անգլիական չորս օդանաւեր Քապուլի անգլիական դեսպանատունէն Փէշավար փոխադրեցին 12 կին եւ 5 երախաներ։ Օդանաւերը ճամբայ ելան այս առաւօտ ժամը 10ին Շէրպուրի օդանաւային կայանէն, որ Քապուլի անգլիական դեսպանատունէն 3 քիլոմեդր հեռու կը գտնուի ու մէկուկէս ժամէն Փէշավար հասան։

⁂ Մոսկուայէն հեռագիր մը կ՚ըսէ թէ Ամանուլլահ Թագաւորի դիրքը բարւոքած է։ Ճէլալապատն ու Տանտամաքը դեռ իր զինուորներու ձեռքն են։ Մոհմանտ ցեղախումբէն օգնական ուժեր կը յառաջանան դէպի Ճէլալապատ, աջակցելու համար կառավարական զօրքերուն, որոնք մէկ շաբաթէ ի վեր պաշարուած են։

Ամանուլլահ Թագաւորի մայրը, որ մեծ ժողովրդականութիւն կը վայելէ հարաւային Աֆղանիստանի ցեղախումբերուն մէջ, շաբաթ օր Քապուլէն օդանաւով Քանտահար մեկնեցաւ։

⁂ Փարիզի աֆղանական դեսպանատունը Քապուլէն կը տեղեկանայ որ կառավարական զօրքերը ստիպուեր են լքել Պակապալա քաղաքը եւ նահանջած են Շէրիքահի ուղղութեամբ։ Թաշքէնտի եւ Քապուլի միջեւ օդանաւային հաղորդակցութիւնները կը շարունակուին։ Մայրաքաղաքին մէջ կացութիւնը շատ լաւ է։

## Հատուցումներու խնդիրը

Գերման կառավարութիւնը կը պատրաստէ նոր յիշատակագիր մը, զոր պիտի ուղղէ դաշնակիցներուն՝ պահանջելու համար որ հատուցումներու նոր գումարը որոշուի ոչ թէ Շանպերիի մէջ Փուանքարէի բացատրած սկզբունքներուն համաձայն, այսինքն Ֆրանսայի հատուցումներու ծախքերն ու արտաքին պարտքերը հաշուելով, այլ պարզապէս նկատի առնելով Գերմանիոյ վճարման կարողութիւնը։

Միացեալ Նահանգները կը մերժեն ներկայացուցիչ ղրկել փորձագէտներու ժողովին։

## 16–40 տարեկան Թուրքերը դպրոց կ՚երթան

Յառաջիկայ յունուար 1էն սկսեալ, ժողովրդական դպրոցներ պիտի բացուին Պոլսոյ բոլոր թաղերուն մէջ, որպէսզի ժողովուրդը թուրքերէն նոր տառերով գրել կարդալ սորվի։ Դպրոցներուն պարտաւորիչ կերպով պիտի հետեւին 16-40 տարեկան բոլոր թրքահպատակները, այր թէ կին։

Իգական սեռը երկուշաբթի եւ հինգշաբթի ցերեկները 2ական ժամ դաս պիտի առնէ։ Իսկ այրերը չորս իրիկուն, մէկական ժամ։

Դասախօսները պիտի ըլլան պետական եւ ոչ-իսլամ դպրոցներու թուրքերէնի ուսուցիչները, որոնք պարտաւորիչ կերպով պիտի ծառայեն։ Ծերերու ժողովները հիմակուընէ պիտի պատրաստեն իրենց թաղերուն 16-40 տարեկաններուն ցանկերը եւ պիտի ներկայացնեն կուսակալութեան։ Պակաս արձանագրութիւն կատարողները խստիւ պիտի պատժուին։ Նոր տառերը գիտցողներու անուններուն դիմաց արձանագրութիւն պիտի կատարուի այդ իմաստով։ Կուսակալութեան մասնաւոր յանձնաժողովը պիտի քննէ իրեն ներկայացուած ցանկերը եւ նշանակէ աշակերտներուն՝ ինչպէս նաեւ ուսուցիչներուն անունները։

Այս ցանկերուն մէջ նշանակուած անձերը պարտաւոր են անպայման յաճախել բացուելիք դասընթացքներուն. այլապէս ոստիկանութեան կողմէ ազդարարութիւն պիտի ստանան։

Գալով անոնց, որոնք կը պնդեն թէ գիտեն նոր տառերով գրել կարդալ, այդպիսիները դասընթացքներու մէջ պիտի քննուին ուսուցիչներու կողմէ եւ վկայական պիտի ստանան։ Յաճախողներն ալ յետոյ վկայական պիտի առնեն, քննութիւն տալով։

Կուսակալութիւնը մասնաւոր կարեւորութեամբ կը հետապնդէ այս գործը, նկատելով որ կապ ունի հանրային դաստիարակութեան հետ։

## Անգլեւթուրք խառն ատեանին առջեւ

Պոլսոյ թուրքեւանգլիական խառն դատարանը զբաղեցաւ կարգ մը դատերով եւ վճիռներ արձակեց։

Սէյրը Սէֆայինի Վարչութիւնը պատերազմէն առաջ շոգենաւ մը ապսպրած էր անգլիական ընկերութեան մը, եւ դրամին մեծ մասն ալ տուած։ Ուէսթմինսթըր դրամատունն ալ երաշխաւոր եղած էր։ Սէյրը Սէֆայինի Վարչութիւնը կը պահանջէր շոգենաւը կամ փոխարժէքը։ Մերժուեցաւ։

Թուրք կառավարութիւնը կը պահանջէր «Րէշատիէ» զրահաւորին համար իր տուած վերջին մասնավճարը։ Մերժուեցաւ։

Դատարանը նոյնպէս մերժեց հատուցման պահանջը, «Րէշատիէ» եւ «Մէճիտիէ» զրահաւորներուն ռազմամթերքի ապսպրանքին համար։

Լաֆոնթէն, Մըսըրլեան եւ երկու անձեր դատ բացած էին Թուրք կառավարութեան դէմ եւ վնասուց հատուցում կը պահանջէին։ Դատարանը մերժեց։

## Համայնավարներու մաքրագործումը

Մոսկուայէն կը հեռագրեն.— համայնավարական կուսակցութեան կեդրոնական կոմիտէն իր վերջին նիստին մէջ հաղորդեց թէ անցնող տարուան ընթացքին Տրոցկիի կուսակիցներէն 1468 հոգի վտարուած են կուսակցութենէն։

## Ապստամբութիւն Բելուջիստանի մէջ

Պասրայէն կը հեռագրեն թէ՝ Պարսկաստանէն հասած լուրերու համաձայն, Բելուջիստանի ցեղապետներէն Տոսթ Մուհամմէտ ապստամբած եւ թունաւորած է բոլոր ջրհորները՝ Շարանէն մինչեւ 12 մղոն դէպի հարաւ-արեւելք։

Երկու օդանաւեր եւ զինուորներ ղրկուեցան Շարանի տափաստանները՝ զսպելու համար ապստամբները։














IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

վուրդին հետ միասին, իրաւունք ունի՝ 1.— Պահանջելու գրաւուած հողամասերու վերջնական ազատագրումը, որ անհրաժեշտ է Եւրոպայի խաղաղեցման համար։ 2.— Ցոյց տալու որ Սարի շրջանի բնակչութիւնը էապէս գերմանական է։ 3.— Պահանջելու որ Գերմանիոյ եւ Աւստրիոյ հատուածները ինքնորոշման իրաւունք ունին։

Յետոյ խօսելով հատուցումներու մասին, գերման վարչապետը կ'ըսէ.

— Եթէ փորձագէտները կ'ուզեն գիտնալ Գերմանիոյ ներկայ տնտեսական վիճակը, պէտք է լրջօրէն ուսումնասիրեն այս ծանր խնդիրը՝ հասկնալու համար թէ երկիրը ի՛նչ կրնայ հայթայթել իր սեփական միջոցներով։ Գերման ժողովուրդը ամենամեծ կարեւորութիւն կուտայ այս քննութեան։ Հատուցումներու խնդրին լուծումը պէտք է անխախտ պահէ դրամին արժէքը եւ ամէն պարագայի անկարելի դարձնէ նոր թղթադրամի շրջաբերութիւնը։

## Աւստրիոյ ընկերվարականները եւ Անշլուսը

Վիեննացի ընկերվարականներէն Պրայթնէր «Ալկէմայնէ Ցայթունկ»ի մէջ յօդուածով մը կը խօսի Աւստրիոյ եւ Գերմանիոյ միացման մասին ու կ'ըսէ.

— Մեր բոլոր յոյսերը դրած ենք գերմանեւաւստրիական բանակցութեանց վրայ, որոնք պիտի սկսին շուտով՝ առեւտրական դաշնագիր մը կնքելու համար։ Վիեննայի տնտեսական զարգացման համար «Անշլուս»ը շատ կարեւոր է։ Վիեննա այն ատեն պիտի դառնայ այն մեծ կեդրոնը, ուսկից պիտի մեկնին առեւտրական բոլոր ճամբաները դէպի Արեւելք։

«Չենք գիտեր թէ ե՞րբ պիտի հռչակուի Անշլուսը, սակայն ստոյգ է որ ո՛չ մէկ բան պիտի կրնայ արգիլել զայն, որովհետեւ ժողովուրդին 100ին 90ը կը պահանջէ զայն բարձրագաղակ՝ գերման մեծ Հանրապետութեան երկրորդ մայրաքաղաքը դարձնելու համար Վիեննան։

⁂ Աւստրիոյ հանրապետութեան նորընտիր Նախագահ Միքլաս եւս տեսակցութեան մը մէջ ինքզինքը կողմնակից ցոյց կուտայ Աւստրիոյ միացման Գերմանիոյ։ Միքլասի յայտարարութիւնները մեծ տպաւորութիւն գործեցին, որովհետեւ Յեղափոխութենէն վերջ կազմուած Ազգային Սահմանադիր ժողովին մէջ յիշեալը միակն ըլլալով ընդդիմացաւ Սահմանադրութեան 2րդ յօդուածին, որ կ'ըսէր. «Աւստրիա մէկ մասն է գերման հանրապետութեան»։

⁂ Ծնունդի առթիւ խիստ սրտագին շնորհաւորութիւններ փոխանակուեցան Գերմանիոյ եւ Աւստրիոյ միջեւ։ Վիեննայի «Նոյէ Ֆրայէ Փրէսէ» թերթը հրատարակեց գերման վարչապետ Հէրման Միւլլէրի «Ծնունդի շնորհաւորութիւնները Աւստրիոյ Գերմաններուն»։ Շնորհաւորութիւններ ղրկած է նաեւ Գերմանիոյ դատական Նախարարը Քոխ, որ կ'աւելցնէ թէ Գերմանիա եւ Աւստրիա կառավարական բարձր պաշտօնատարներ փոխանակելով աւելի կ'ամրացնեն իրենց բարեկամութիւնը։ Գերմանիա եւ Աւստրիա պիտի ընդունին պատժական նոյն օրինագիրքը եւ երկու քոյր ազգերու մերձեցումը հետզհետէ աւելի պիտի շեշտուի բոլոր մարզերու մէջ։

## Թուրքերը կը սորվին նոր տառերը

Ընկիւրիէն կը հեռագրեն.

Վերջին երեք ամսուան ընթացքին հարիւր հազարաւոր պաշտօնեաներ ու զինուորականներ լատինական տառերով գրել կարդալ սորվեցան թրքական դպրոցներուն մէջ։

Ամբողջ երկրին մէջ բացուած են ազգային դպրոցներ («Միլլէթ մէքթէպի»), ուր պիտի ուսանին 20 տարեկանէ վեր անուսները։ Միայն Պոլսոյ դպրոցները կը յաճախեն 200,000 աշակերտներ։

Կրթական գործավարութիւնը միջոցներ ձեռք առած է որպէսզի մինչեւ տարւոյն վերջը 400,000 այրեր ու կիներ գրել կարդալ սորվին։

Լատիներէն տառերով տպուած գիրք մը Թուրքիոյ մէջ առաջին անգամ ըլլալով 200,000 օրինակ տպուեցաւ։

## Աֆղանիստանի կռիւները

Լոնտոնի աֆղանական դեսպանատունը կը հաղորդէ որ կառավարական զինուորները մեծ պարտութեան ենթարկած են ապստամբները։

Ռուսական օդանաւ մը ճամբայ հանուած է դէպի Քապուլ՝ խորհրդային քաղաքացիները ապահով տեղեր փոխադրելու համար։ Գերմանները կարգադրութիւններ ըրած են 20 Գերմաններ պաշարման շրջանակէն դուրս փոխադրելու համար։ Օտարահպատակ բոլոր կիներն ու երախաները հետզհետէ պիտի փոխադրուին Թաշքենտ (Թուրքեստան) եւ Փէշավար (Հնդկաստան)։

Կառավարական զօրքերը կը շահին ամէն ճակատի վրայ։ Հիւսիսային կողմը ապստամբները կը նահանջեն, մինչ Ճէլալապատի կողմէ բազմաթիւ կարեւոր ցեղախումբեր հպատակութիւն կը յայտնեն կառավարութեան։ Ասոնց մէջ են Մոհմանտներու եւ Խուկավրիներու կարեւոր ցեղախումբերը։

Կ'ըսուի թէ Քանտահար գացած են միայն Սուրէյեա թագուհին եւ մայր թագուհին։ Իսկ Ամանուլլահ թագաւորի ուր գտնուելուն մասին ստոյգ տեղեկութիւն չկայ։

## Մահափորձ գաղտնի ոստիկանի մը դէմ

Զաղրէպէն կը հաղորդեն որ երկուշաբթի գիշեր անծանօթ մը, որ սրճարանի մը հեռաձայնի խցիկին մէջ պահուըտած էր, ատրճանակ պարպեց գաղտնի ոստիկան կրաուէրի վրայ, երբ այս վերջինը խցիկէն ներս պիտի մտնէր։

Անհաբեկիչը յաջողեցաւ փախչիլ։ Զոհը հիւանդանոց փոխադրուեցաւ՝ խիստ ծանր վիճակի մէջ։

## Արաբները զիրար կը ջարդեն

Ամմանէն կը հաղորդեն թէ Անդրյորդանանի սահմանագլուխին վրայ Վէհապիները ջարդած են Լաթուալի կարեւոր ցեղախումբէն մեծ թիւով մարդիկ։

Նոյնպէս սպաննուած է Շէյխ Իպն Ճամաան, յիշեալ ցեղախումբի պետերէն մէկը, որ ուզած էր հետապնդել յարձակողները եւ վրէժ լուծել։ Թշնամին գերակշիռ ըլլալով, սպաննուած են նաեւ ցեղապետին ընկերակցող բոլոր ձիաւորները։

Ամբողջ շրջանը գրգռուած է։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

## ԼՈՆՏՈՆ - ՈՒԷՍԹՄԻՆՍԹԸՐԷՆ ՓԱՐԻԶ - ԹՐԻՆԻԹԷ

Անցեալ շաբթու կարգ մը մանրամասնութիւններ տուեր էինք Լոնտոն փարիզ ընդծովեայ փապուղիի մը կառուցման յատակագծին մասին։

Հակառակ այս մասին անգլիական կառավարութեան վերապահ ընթացքին, Խորհրդարանին մէջ՝ հարցման մը պատասխանելով վարչապետը յայտարարեց թէ դեռ ատենը չէ եկած այդ մասին լրիւ տեղեկութիւններ տալու, քանի որ կարգ մը շրջանակներ, տակաւին չեն վերջացուցած իրենց ուսումնասիրութիւնները։

Մասնագէտներու հետ խորհրդակցութենէ յետոյ, յատակագծին հեղինակը ընդծովեայ երկաթագծին համար լայնք ընտրած է 2 մեդր 134, փոխանակ 1 մեդր 435ի, որովհետեւ արագութեան, ծանրութեան եւ կառքերու երկարութեան տեսակէտով, այս լայնքը աւելի նախընտրելի կը կարծուի։ Վայրաշարժի հարցն ալ լուրջ ուսումնասիրութեան ենթարկուած է։

...րով օրական կարելի պիտի ըլլայ փոխադրել 26,752 անձեր։

Միայն անգլիական բաժնին համար ծախքերը կը հաշուուին 58 միլիոն. 500,000 ստերլին. իսկ ֆրանսական բաժնին համար 99 միլիոն 800,000 ոսկի։ Իսկ տարեկան զուտ հասոյթ կ'ենթադրուի մօտ 12 միլիոն անգլիական։

## ԵՂԻՇԷ ԱՐՔ. ԴՈՒՐԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆԸ

Ինչպէս գրած էինք, յառաջիկայ տարի պիտի կատարուի Եղիշէ արքեպսկ. Դուրեանի քահանայութեան յիսնամեայ յոբելեանը (1879 1929)։ Այս առթիւ կազմուած է կեդր. յանձնաժողով մը, որուն կոչէն կը քաղենք հետեւեալ յայտարարութիւնը.—

Ա. Հրատարակել հատոր մը 1929 տարւոյ ընթացքին, որ պիտի բովանդակէ Ամեն. Դուրեան Սրբազանի աշակերտներուն, եկեղեցական թէ աշխարհական, բարեկամներուն եւ հիացողներուն գնահատումները, տպաւորութիւնները, յուշիկները եւլն.։ Հատորին սկիզբը պիտի դրուի Ամենապատիւ Յոբելեարին յման...

...կազմը.— Թորգոմ արք. Գուշակեան՝ պատուակալ նախագահ, Մեսրոպ եպ. Նշանեան՝ ատենապետ, Բաբգէն եպս. Կիւլէսէրեան՝ ատենադպիր, Մկրտիչ եպս. Աղաւնունի՝ գանձապետ, Մատթէոս եպս. Գայըգճեան՝ խորհրդական, Կիւրեղ վրդ. Իսրայէլեան, Պր. Կարապետ Նուրեան, Պր. Գրիգոր Մխալեան։

Հասցէ.— Patriarcat Arménien, Jérusalem-Palestine.

## «ՌՈՍՏՈՄ»Ի ԵՐԵԿՈՅԹԸ

Շաբաթ երեկոյ տեղի ունեցաւ փարիզի «Ռոստոմ» գրադարանի երեկոյթ - պարահանդէսը, մեծ խանդավառութեամբ։ «Սալ տիւ Շալէ Էտուար»ի շքեղ սրահները լեցուած էին ժամանակէն առաջ, այնպէս որ շատեր ստիպուեցան ոտքի վրայ մնալ։

Ընկեր Արիս հանդէսը բացաւ...

...Պ. Տ. Տիւրացեան, որ նուիրեց 50 ֆրանք եւ շահեցաւ գորգը։

Յաջողապէս անցաւ «Թիւ 5 խնլագարը»։ Գիշերուան ժամը 1էն յետոյ սկսան խրախճանութիւններն ու պարերը, որոնք տեւեցին մինչեւ արշալոյս։

Գրիգոր

## ՕՐՈՒԱՆ ԴԷՊՔԵՐ

...

## ՋԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### ՅՈՒՍԱԽԱԲ ՀԱՅԵՐ

ԿՐԱՍ.—Քանի մը ամիս առաջ, տեղւոյս հայերուն թիւը 130ը կ'անցնէր։ Հ. Յ. Դ. «Քրիստափոր» Ենթակոմիտէն ամէն ջանք ի գործ կը դնէր եթէ ոչ մանկապարտէզ մը բանալու, գէթ սենեակի մը անկիւնը հաւաքելու գաղութիս պզտիկները՝ անոնց հայերէն սորվեցնելու համար։ «Քրիստափոր»ի ծրագիրը չիրականացաւ, հայրենակիցներու մեծ մասին հեռանալուն պատճառաւ։ Շատերը Լիոն մեկնե...

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

ԽՄԲ.— Հին Յունաստանի Ազգային վարչութենէն ստացած ենք հետեւեալ յայտարարութիւնը, հրատարակելու խնդրանքով.

Ազգ. Կեդր. Վարչութիւնս ցաւով կը նկատէ թէ տեղական եւ արտասահմանեան կարգ մը թերթերու մէջ իր ազգային գործերու մէջ հետեւած ուղղութիւնը կը ներկայացուի կուսակցական գոյնի տակ։

Վարչութիւնս իր գործունէութեան սկիզբէն մինչեւ այսօր, միայն եւ միայն ազգային շահերու պաշտպանութիւնը ունենալով իբր սկզբունք, գործեց բոլորովին անկախ ոեւէ արտաքին ազդեցութենէ եւ Յունահայ Գաղութի Կազմական Կանոնագրի համաձայն պահելով իր օրինական մեծամասնութիւնը պիտի շարունակէ վարել ազգային գործերը, պահպանելով յունահայ գաղութի իրաւական կարգերը և հսկելով մանաւանդ տառացի գործադրութեանը Կազմական կանոնագրին։

Վարչութիւնս բնականօրէն կը ստանձնէ իր գործերուն ամբողջ պատասխանատուութիւնը եւ պատրաստ է ոեւէ ատեն հաշիւ տալ Պատգամաւորական Ժողովին զոր կը ճանչնայ իբր գաղութի գերագոյն մարմինը։

Ներկայ պաշտօնական յայտարարութիւնը կը հրատարակուի իբր հերքում մը մասնաւորապէս արտասահմանեան թերթերու մէջ հրատարակուած անճիշտ տեղեկութիւններու, որոնց Վարչութեանս մասին ստեղծած աննպաստ տպաւորութիւններու հետեւանքով կը տուժեն դպրոցական մանուկները, աղքատները եւ հիւանդները։

Ազգ. կեդր. վարչութիւն
Հին Յունաստանի եւ կղզիներու
(ԿՆԻՔ)

20 Դեկտ. 1928
Աթէնք

### Պ. Ա. ՊԱԳԱԼԵԱՆԻ ՆԿԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նկարիչ Ա. Պագալեանի պոլսական եւ փարիզեան տեսարաններու նկարահանդէսը տեղի կունենայ 29 դեկտեմբերէն 11 յունուար, 83 Rue fbg. St. Honoré, Bernheim-Jeuneի շքեղ սրահը՝ Ա. յարկ՝ բացի կիրակի եւ տօն օրերէ, եւ երկուշաբթի առաւօտներէ՝ ժամը 10—12 եւ 2—6։

Նկարահանդէսին հովանաւորութիւնը ստանձնած է ազնուափայլ Տիկին Ն. Գափամաճեան։ Պատուոյ անդամներն են իշխան Բ. Արղութեան-Երկայնաբազուկ, Պ. Պ. Արմենակ պէյ Սաքըզ, Վ. Մալէզեան, եւ Տէր եւ Տիկին Ն. Ցրէնկեան։ Ծ.

### «ՅԱՌԱՋ» ԿԸ ՆՈՒԻՐԷՆ

Քաղապլանքայէն Պ. Աւետիս Չաքըրեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ Miss Karene Yepréի հայկական որբանոցին՝ Հալէպ, 1928 դեկտ. 15էն 1929 դեկտեմբեր 15։



## «ՅԱՌԱՋ»Ի ՊԱՏՄՈՒԱԾՔՆԵՐԸ

# ԻՐ ԿԵԱՆՔԻՆ ԳՆՈՎ

Բայց երբ տեսաւ Գաւիթի դէմքին վրայ անհուն անձկութեան մը ծաւալումը, եւ աչքերուն անսովոր ընդլայնումը որ ազդանշանն էր սպառնացող քայքայման եւ զայն յառաջացնող փոթորիկին, հրամանատարը նա...

...

...շատ բնականօրէն, որ պիտի ըլլար ամուսնին հետ, հոգ չէ թէ ուր, եւ չէր իսկ անդրադարձած վայրին մասին։

Խնդրին ստացած հանգա...

...

Իր դատին ստորնութիւնը կը մղէր զինք բնազդաբար ապաւէն փնտռել մէկու մը մօտ, զոր պիտի չքաշուէր ուրիշ ոեւէ պարագայի գարշապարին տակ առնել ու ջախ...

...

(14) Փ. ՇԱՐՈՅԵԱՆ

Հինգշաբթի օր կատարուեցաւ Յրդ ձերբակալութիւնը: կալանաւորն է «Լա Ռիւմէօր» օրաթերթին տնօրէնը՝ Ժորժ Անքըթիլ, որուն անունը կը յիշուէր առաջին օրէն իսկ, իբրեւ մեղսակից Տիկին Հանոյի եւ մանաւանդ իբրեւ լրտես եւ «շանթաժիստ»: Հարցաքննիչ դատաւորը շատոնց համոզուած էր այս աղմկայարոյց լրագրողին մեղսակցութեան, բայց առջի օր միայն կրցաւ ձեռք ձգել վճռական փաստաթուղթերը եւ անմիջապէս ստորագրեց ձերբակալման հրամանագիրը: Այդ փաստաթուղթերն են երկու ընկալագիրներ, իւրաքանչիւրը 75,000 ֆրանքի, որոնք Տիկին Հանոյէն գանձուած են Նոյեմբեր 27ին եւ 28ին, միջնորդի մը՝ Ամառի կողմէ, Անքըթիլի հաշուոյն: Հարցաքննիչ դատաւորին կարծիքով, «Լա Ռիւմէօր»ի տնօրէնը շատ լաւ գիտէր թէ այդ 150,000 ֆրանքը խարդախութեամբ ճարուած է, քանի որ իր թերթին մէջ արդէն դիմակազերծ ըրած էր «Կազէթ տիւ Ֆրան»ը, իբրեւ խաբեբայական ձեռնարկ մը: Միւս կողմէ, իր կինը ստիպած էր ետ առնել Տիկին Հանոյի քով ձգած աւանդ գումարը, եւ վերջապէս ամբողջ գործը հրապարակ ելած էր:

Պ. Անքըթիլ, որ չէր գիտեր ընկալագիրներուն գոյութիւնը, վճռապէս ուրացաւ եւ սարէն-ձորէն պատմութիւններ պատմեց: Ամբողջ վարագոյրը բացաւ միջնորդ Մ. Ամառ, որուն համար թերթերը կը գրեն թէ ֆրանսացած Թուրք մըն է (թերեւս Հրեայ): Անքըթիլ արգելափակուեցաւ սենեակի մը մէջ, իսկ Ամառ, որ շատ կը վախնար անոր վրէժխնդրութենէն, սկսաւ պատմել.

— Պ. Անքըթիլ, որ Տիկին Հանոյի վարձու տուած էր իր թերթին սեղանաւորական բաժնին մէկ մասը, բաւական շահաւէտ չէր գտներ այս գործողութիւնը: Ուստի հասկցուց Տիկ. Հանոյի թէ պայքար պիտի բանայ «Կազէթ»ի դէմ, եթէ աւելի չվճարէ: Տիկինը ականջ չկախեց: Բայց երբ իմացաւ թէ Անքըթիլ պիտի սկսի պայքարը, վախցաւ եւ ի զուր փորձեց երթալ գտնել: Անքըթիլ չէր երեւար եւ առաջին մերկացումները սկսան: Տիկին Հանօ զիս ղրկեց Անքըթիլի քով, որ նախ դժկամակելէ յետոյ, 150,000 ֆրանք պահանջեց և համաձայնութիւն գոյացաւ: Տիկին Հանօ Նոյ. 27ին ինծի յանձնեց 75,000 ֆր., իմ ստորագրութեամբ ընկալագրով մը, «ի հաշիւ Պ. Անքըթիլի»: Ես անմիջապէս այդ գումարը ձեռքովս յանձնեցի «Լա Ռիւմէօր»ի տնօրէնին: Երկրորդ 75,000ը պիտի ստանար Նոյ. 29ին, բայց 28ին ինծի ըսաւ թէ ստիպողաբար պէտք ունի ամսագլխուն: Այն ատեն չեք մը տուի իմ վրայ եւ գանձեցի Տիկ. Հանոյէն, միեւնոյն ձեւ ընկալագրով մը:

Այս վկայութենէն եւ ուրիշ յայտնութիւններէ յետոյ, հարցաքննիչ դատաւորը կանչեց Անքըթիլը, որ նորէն փորձեց ուրանալ: Բայց դատաւորը արդէն համոզում գոյացուցած ըլլալով, բանտարկել տուաւ խարդախութեան, վստահութեան զեղծումի եւ մեղսակցութեան համար:

— Կը խորտակէք իմ քաղաքական ասպարէզս, կը ճչար Անքըթիլ, որ կուլանայի Նահանգային ժողովին Նախագահ ընտրուած է:

Թերթերը հեգնութեամբ դիտել կուտան թէ «Լա Ռիւմէօր»ի տնօրէնը այժմ կրնայ կուլանա երթալ ձրիաբար (ֆրանսական գաղթավայր մը, ուր թիապարտները կը ղրկեն):

## ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ

կը խօսի՝ ԸՆԿ. Ն. ԱՂԲԱԼԵԱՆ

*ՎԱՂԸ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ ՑԻՆ, ՌԻՒ ՇԱՓ, ՊՕՆ ԹԷԱԹՐԻ ՄԷՋ*

## ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. ՍԷՆ Լուի «Ակնունի» ենթակոմիտէի կողմէ, ի նպաստ «Ակնունի» ենթակոմիտէի ցան ֆօնտին:

վաղը Շաբաթ գիշեր ժամը 8ին, 84 Ռիւ Շափ, Պօն Թէաթրի մէջ

## «ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐ»Ը ՎԻԷՆԻ ՄԷՋ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Ֆօն Թ՚էվէք

*Մ Ո Ւ Տ Ք Ը  Ա Զ Ա Տ  Է*

## ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Ա. Ե. Հ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղին կողմէ Նոր Տարւոյ առթիւ, այս Երկուշաբթի գիշեր ժամը 8.30էն մինչեւ առաւօտ,* Cours Lafayette, *«Օրլոժէ»ի վերնայարկը:*

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

30 դեկտեմբեր կիրակի ժամը 3ին

Salle Chopin (Pleyel) 252 Rue Fbg. St. Honoré, Métro Ternes

*Նախաձեռնութեամբ՝ ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ*

ՕՐ. ԱՆՈՒՇ ՊԵՏՐՈՍԵԱՆ

ԵՒ

ԳՐԻԳՈՐ ՄԵԼՔՈՆԵԱՆ

ՆՇԱՆՈՒԱԾ

*Փարիզ  Պուա Քոլոնպ*

*25 Դեկտ. 1928*

## Հ. Յ. Դ.

Պուա Քոլոնպի *Եռագոյն խումբի ժողովը՝ այս իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին:*

Լիոնի *շրջ. կոմիտէի դասախօսական ժողովը՝ վաղը առաւօտ ժամը 8.30ին, Գ. Թաղապետութեան Դրադարանի սրահին մէջ, կը խօսի՝ ընկ. Ա. Գառնէ: Նիւթ՝ «Պոլետ գրականութիւնը Հայաստանի մէջ:» Կը հրաւիրուին բոլոր ընկերները:*

**Կը փնտռուի** *գրաշարութիւն կամ մեքենավարութիւն սորվիլ ուզող երիտասարդ մը: Դիմել՝* Imprimerie Artistique, 42 Rue de la Jonquière, Nord Sud: Marcadet-Balagny.



ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Պատիւ ունիմ հետաքրքրուողներուն հրապարակաւ յայտնելու թէ «Ա. Կիւլպէնկեան եւ Թ. Այվազեան ընկերութիւն»ը 1 Հոկտեմբեր 1928 թուականէն ի վեր լուծուած և ընկերութեան բոլոր պարտքերն ու առնելիքները փոխանցուած են Պ. Ա. Կիւլպէնկեանի:*

*ԹԱԳԻՈՐ ԱՅՎԱԶԵԱՆ*

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY